Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 21 ՆՈՅԵՄԲԵՐ 1959

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

**Նյութեր զրույցների համար**

Նոր գործերով նշանավորենք ՍՄԿՊ Կենտկոմի առաջիկա պլենումը . . . . . . . 1
ՍՍՌՄ Գերագույն Սովետի երրորդ սեսիան . 9
Ֆ. ԻՎԱՆՈՎ— Խաղաղության և բարեկամության պատմական միսիան . . . . 20
Գ. ԱՂԱԽԱՆՅԱՆ—Սովետահայ գիրքը և մամուլը . . . . . . . . . . . 33

**Օգտագործիր զրույցի ժամանակ**

Դեպի ՀԿՊ XXI համագումարը (Թվեր և փաստեր) . . . . . . . . . 40

**Եղբայրական սոցիալիստական երկրներում**

Ջ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ— Մոնղոլական ժողովրդական ռեսպուբլիկայի 35 տարին . . . . 43

Խմբագրության հասցեն— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս՝ 2—52—78:



# ՆՈՐ ԳՈՐԾԵՐՈՎ ՆՇԱՆԱՎՈՐԵՆՔ ՍՄԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՌԱՋԻԿԱ ՊԼԵՆՈՒՄԸ

Շուտով մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում տեղի կունենա Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հերթական պլենումը, որը վիթխարի իրադարձություն կլինի սովետական ժողովրդի կյանքում: Հաղաղա Կոմունիստական պարտիան բացի ժողովրդի շահերից, ուրիշ շահեր չունի, նա անդադրում հոգ է տանում աշխատավորների բարօրության համար:

Ինչպես հայտնի է ՍՄԿՊ Կենտկոմի հաղորդագրությունից, պլենումը քննարկելու է հողագործության վերելքի և հացահատիկի, շաքարի ճակնդեղի, բամբակի ու մյուս տեխնիկական կուլտուրաների, կարտոֆիլի, բանջարեղենի, մրգերի, խաղողի և բուսաբուծության մյուս մթերքների արտադրու-

թյունն ավելացնելու, հանրային անասնաբուծությունը զարգացնելու և մսի, կաթի, բրդի, ձվի ու անասնաբուծական մյուս մթերքների արտադրությունն ավելացնելու, կոլտնտեսություններն ու սովխոզները կադրերով ամրապնդելու, գյուղատնտեսության հետագա մեքենայացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման, կոլտնտեսությունների հանրային տնտեսության ամրապնդման և կոլտնտեսականների նյութական բարեկեցության բարձրացման վերաբերյալ ՍՄԿԿ XXI համագումարի և Կենտկոմի Դեկտեմբերյան (1958 թ.) պլենումի որոշումների կատարման միջոցառումների հարցը։

Սովետական Միության ամբողջ աշխատավորների հետ միասին մեր ռեսպուբլիկայի աշխատավորները նույնպես մեծագույն գոհունակությամբ ընդունեցին այդ ուրախալի լուրը և ի պատիվ պլենումի նոր թափով ծավալեցին սոցիալիստական մրրցությունը յոթնամյակի առաջին տարվա պլանները ժամկետից շուտ ու բարձր ցուցանիշներով կատարելու համար։

Ուրախալի է իմանալ, որ մեր ռեսպուբլիկայի արդյունաբերությունը ժամկետից



շուտ, կատարեց տասն ամսվա առաջադրանքը։ Նշանակալից հաջողությունների հասան Երևանի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները։ Նրանք այս տարվա տասն ամսվա համախառն արտադրանքի թողարկման պլանը կատարեցին հոկտեմբերի 20-ին։

Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում ծավալված սոցիալիստական մրցության շնորհիվ մեծ են հաջողությունները անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ։ Օրինակ, 1959 թվականի ինն ամսում արդյունաբերական արտադրության ծավալը, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, աճել է 12 տոկոսով։ Մեր ռեսպուբլիկայում 1959 թվականի ինն ամսում, 1958 թվականի համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, գունավոր մետալուրգիայի արտադրությունն ավելացել է 114 տոկոսով, քիմիական նյութերի արտադրությունը՝ 113, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 106, մեքենաշինության և մետաղամշակման արտադրությունը՝ 122, շինանյութերի արտադրությունը՝ 133, սննդի արդյունաբերության արտադրությունը՝ 108, թեթև արդյունա-

բերության արտադրությունը՝ 108 տոկոսով։

Այս տարվա ինն ամսում ռեսպուբլիկայում արտադրվել է 1924 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 144.360 տոննա հանքային պարարտանյութ, 20.861 հատ մինչև 100 կիլովատ կարողությամբ գեներատորներ, 147.933 հատ մինչև 100 կիլովատ կարողությամբ էլեկտրաշարժիչ, 1.134 հատ կոմպրեսոր, 2.022 հատ մետաղահատ հաստոց, 58.830 կիլոմետր տեղակայման հաղորդալար, 92.806 խորանարդ մետր երկաթբետոնե հավաքովի կոնստրուկցիաներ, 22 միլիոն 936 հազար ռուբլու էլեկտրաչափիչ սարքեր, 6.166 տոննա բամբակաթել, 39 միլիոն 478 հազար քառակուսի մետր բամբակե գործվածքներ, 3 միլիոն 909 հազար քառակուսի մետր բրդե գործվածքներ, 4 միլիոն 504 հազար քառակուսի մետր մետաքսե գործվածքներ, 73 միլիոն 786 հազար ռուբլու կահույք և այլն։

Անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ խոշոր հաջողություններ ունեն հատկապես էլեկտրաէներգիայի արտադրության բնագավառում աշխատողները։ 1959 թվականի ինն ամսում, 1958 թվականի նույն ամիսների համեմատությամբ 105 միլիոն կիլովատժամ էլեկ-



տրաէներգիա ավել է արտադրված։ Անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ ավելացել է նաև գունավոր մետաղների, սինթետիկ կաուչուկի, ամոնիակի, կաուստիկ սոդայի, ծծմբաթթվի, ավտոդողերի և արդյունաբերական արտադրանքի շատ ուրիշ տեսակների արտադրությունը։

Գերակատարված է լայն սպառման ապրանքների, մետաքսե գործվածքների, տրիկոտաժե սպիտակեղենի ու վերնազգեստի, կահույքի, շաքարավազի, յուղի ու ձեթի, անարատ կաթնամթերքների, օճառի, գլանակների արտադրության ինն ամսվա պլանը։ 1959 թվականի ինն ամսում, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, աշխատանքի արտադրողականությունն ավելացել է 7 տոկոսով։

Այս տարվա ինն ամսում ապրանքային արտադրանքի գծով ինքնարժեքի իջեցումից 40 միլիոն ռուբլու խնայողություն է կատարվել։

ՍՄԿՊ Կենտկոմի առաջիկա պլենումը աչքի ընկնող հաջողություններով են դիմավորում մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության բնագավառի աշխատողները։ Ժամկետից շուտ, հոկտեմբերի 13-ին, կատար-

վեց խաղողի հանձնման տարեկան պլանը։ Այս տարի անցյալ տարվա համեմատությամբ պետությանը և առևտրական կազմակերպություններին հազարավոր տոննա ավել խաղող է վաճառված։ Ռեսպուբլիկայի բազմաթիվ խաղողագործական կոլտնտեսություններ հեկտարից 150—250 ցենտներ խաղող են ստացել։ Կատարված է նաև ծխախոտի հումքի հանձնման տարեկան պլանը։ Բամբակի հիանալի բերք են աճեցրել մեր կոլտնտեսությունները։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովխոզներում խոշոր աշխատանք է կատարվել անասուններին կերով ապահովելու գործում։ Նրանք այս տարի 116 հազար տոննա խոտ և 100 հազար տոննա սիլոս ավել են կուտակել, քան անցյալ տարի։ Մեծ չափերով ավելացել են անասնաբուծական մթերքների արտադրությունը։ Լուրջ հաջողությունների է հասել հատկապես Սպիտակի շրջանը, որը 1959 թվականի երրորդ եռամսյակում, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ կաթի արտադրությունն ավելացրել է 30,9 տոկոսով, մսինը՝ 16,4, բրդինը՝ 12,9, ձվինը՝ 41,4 տոկոսով։ Սպիտակի շրջանին է հանձնված



ՀԿՊ Կենտկոմի և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի փոխանցիկ դրոշը։

Կենտրոնական Կոմիտեի պլենումը նոր հաջողություններով են դիմավորում նաև մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի աշխատողները։

Կոմունիստական պարտիայի Լենինյան Կենտրոնական Կոմիտեն վճռականորեն պայքարում է ՍՄԿՊ XXI համագումարի պատմական որոշումները մինչև վերջ կենսագործելու համար։ Այդ կապակցությամբ այս տարվա հունիս ամսին ՍՄԿՊ Կենտկոմը իր հերթական պլենումում բազմակողմանիորեն քննության առավ արդյունաբերության և շինարարության մեջ տեխնիկական պրոգրեսն արագացնելու մասին XXI համագումարի որոշումների կատարման ընթացքը և մշակեց աշխատանքի գործնական ծրագիր։ Այժմ Կենտրոնական Կոմիտեն իր հերթական պլենումում քննարկելու է գյուղատնտեսության հետագա զարգացման կարևորագույն հարցեր, որովհետև մեզանում գյուղատնտեսության բնագավառում դեռևս թերություններ կան։

Ինքնին հասկանալի է, թե այժմ ինչ վիթխարի անելիքներ ունեն գյուղատնտեսության բնագավառում աշխատող ագիտա-

տորները։ Պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ, ինչպես պահանջում է ՍՄԿՊ Կենտկոմը նրանք պետք է համակողմանի և լայնորեն օգտագործեն մասսաների կոմունիստական դաստիարակության բոլոր բազմազան ձևերն ու միջոցները, մոբիլիզացնեն սովետական ժողովրդի ստեղծագործական ուժերը՝ յոթնամյա պլանի կատարելու և գերակատարելու համար։

Մեր ռեսպուբլիկայի ագիտատորները աշխատանքի հարուստ կենսափորձ ունեն սոցիալիստական մրցություն ծավալելու, մրցող կողմերին օգնելու ստանձնած պարտավորությունները անթերի կատարելու, առաջավոր փորձը արտադրության մեջ արմատավորելու գործում։ Նրանք պետք է շարունակեն այդ շնորհակալ աշխատանքը և հասնեն այն բանին, որ լիովին գործի վերածվեն յոթնամյակը ժամկետից շուտ կատարելու վերաբերյալ սոցիալիստական պարտավորությունները։

---

# ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԵՐՐՈՐԴ ՍԵՍԻԱՆ

Հոկտեմբերի 27-ին Մոսկվայում բացվեց ՍՍՌՄ հինգերորդ գումարման Գերագույն Սովետի երրորդ սեսիան։

Սեսիան քննության առավ հետևյալ հարցերը՝ 1. ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1960 թվականի պլանի մասին։ 2. ՍՍՌ Միության 1960 թվականի Պետական բյուջեի մասին և 1958 թվականի Պետական բյուջեի կատարման մասին։ 3. ՍՍՌ Միության և միութենական ռեսպուբլիկաների բյուջետային իրավունքների օրենքի նախագծի մասին։ 4. ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատին ետ կանչելու կարգի վերաբերյալ օրենքի նախագծի մասին։ 5. Սովետական Միության միջազգային դրության և արտաքին քաղաքականության մասին։ 6. ՍՍՌ Միության Գերագույն Սովետի Նախագահության հրամանագրերը հաստատելու մասին։

Օրակարգի առաջին հարցի մասին զեկուցումով հանդես է գալիս ՍՍՌՄ Մինիստրը-

ների Սովետի Նախագահի տեղակալ, ՍՍՌՄ Պետպլանի Նախագահ, դեպուտատ Ա. Ն. Կոսիգինը։

— Կոմունիստական պարտիայի և նրա Լենինյան Կենտրոնական Կոմիտեի ղեկավարությամբ,— ասում է Ա. Ն. Կոսիգինը,— սովետական ժողովուրդը հաջողությամբ կենսագործում է ՍՄԿՊ XXI համագումարի որոշումները։ Սովետական մարդկանց անձնվեր աշխատանքի շնորհիվ արագորեն զարգանում են արդյունաբերության, տրանսպորտի, գյուղատնտեսության բոլոր ճյուղերը։

Խոսելով ընթացիկ տարում ժողովրդական տնտեսության զարգացման մասին, նա նշում է, որ երկրի էկոնոմիկան մեծ վերելք է ապրում։ Արդյունաբերության արտադրության աճի տեմպերը զգալիորեն գերազանցում են յոթնամյակով նախատեսված միջին տարեկան առաջադրանքները։

Ժողովրդական տնտեսության հիմնական խնդրի լուծման և ժողովրդի կենսամակարդակի բարձրացման ուղղությամբ մեր երկիրը նոր, խոշոր քայլ կանի 1960 թվականին։ Մինչև տարվա վերջը պետք է ավարտվի բանվորների ու ծառայողների փոխադրումը 6-ժամյա և 7-ժամյա աշխատանքային օրվա։ Լայն զարգացում է ստանալու բնակա-



րանային շինարարությունը, ինչպես նաև կոմունալ-կենցաղային հիմնարկների, դպրոցների, գիշերօթիկ դպրոցների, հիվանդանոցների, մանկապարտեզների ու մանկամսուրների շինարարությունը։

Արդյունաբերության համախառն արտադրանքը ընթացիկ տարվա համեմատությամբ, 1960 թվականին կավելանա 8,1 տոկոսով։ Ընդսմին արտադրամիջոցների արտադրությունը կաճի 8,8 տոկոսով, իսկ սպառման առարկաների արտադրությունը՝ 6,4 տոկոսով։ Նախատեսված է քիմիական արդյունաբերության ընդհանուր ծավալը ավելացնել 10 տոկոսով, այդ թվում պլաստմասսաների արտադրությունը՝ 20 տոկոսով, քիմիական մանրաթելինը՝ 17 տոկոսով։ Զգալիորեն կաճի սինթետիկ կաուչուկի արտադրությունը։

Պլանավորվում է վառելիքի արդյունաբերության մեծ զարգացում։ 1960 թվականին նավթի արդյունահանումը կաճի գրեթե 15 միլիոն տոննայով և կկազմի 144 միլիոն տոննա։ Գազի արդյունահանումը կմեծանա ավելի քան մեկ երրորդով և կանցնի 53 միլիարդ խորանարդ մետրից։ Ածխի հանույթը կաճի 1,7 տոկոսով, ընդ որում կավելանա գլխավորապես կոքսացող ածխի հանույթը։

Նախատեսված է եկող տարի արտադրել 291 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա կամ 11,2 տոկոսով ավելի, քան ընթացիկ տարում։

Պլանով նախատեսվում է սև մետալուրգիայի զարգացման խոշոր միջոցառումներ։ Չուգունի արտադրությունը ավելացվելու է 9 տոկոսով, պողպատինը՝ 8 տոկոսով, գլանվածքինը՝ 7 տոկոսով, խողովակներինը՝ 12 տոկոսով։ Եկող տարի մեր երկրում պողպատի ձուլումը կհասնի գրեթե 65 միլիոն տոննայի։ Երկաթի հանքաքարերի արդյունահանումը կանցնի 105 միլիոն տոննայից։

1960 թվականին սերիական արտադրության կդրվեն սարքավորումների մոտ 400 կարևորագույն տեսակներ, կմշակվեն և կըպատրաստվեն մեքենաների, մեխանիզմների ու սարքերի ավելի քան 1.400 փորձնական նմուշներ. պլանավորված է արտադրությունից հանել ավելի քան 500 տեսակի հնացած սարքավորումներ։ 1960 թվականին թեթև արդյունաբերության արտադրանքի ծավալը, 1959 թվականի համեմատությամբ, կմեծանա գրեթե 9 միլիարդ ռուբլով։ Նախատեսվում է գործվածքների արտադրությունը հասցնել 7.900 միլիոն մետրի, տրիկոտաժեղենինը՝ 548,3 միլիոն հատի, իսկ կաշվե



կոշկեղենինը՝ 407,5 միլիոն զույգի։ Ավելանում է մելանժե, վուշե և բրդե նուրբ գործվածքների, ռանտավոր կոշկեղենի և բնակչության կողմից մեծ պահանջարկ վայելող մյուս ապրանքների թողարկումը։

Զգալի կերպով զարգանալու է սննդարդյունաբերությունը։ Պլանավորված է շաքարի նոր գործարանների, յուղի, պանրի ու կաթի վերամշակման ձեռնարկությունների, մսի կոմբինատների սառնարանների մեծ շինարարություն։

Պարտիայի ղեկավարությամբ վերջին շրջանում խոշոր հաջողություններ են ձեռք բերվել նաև գյուղատնտեսության զարգացման ուղղությամբ։ Հացահատիկի համախառն բերքը 1960 թվականին պետք է կազմի մոտավորապես 9,3 միլիարդ փութ։ Մսի արտադրությունը կաճի գրեթե 10,6 միլիոն տոննայով՝ սպանդանոցային քաշով։ Նախատեսվում է ստանալ մոտ 72 միլիոն տոննա կաթ կամ բնակչության մեկ շնչին 336 կիլոգրամ՝ անցյալ տարի ԱՄՆ-ում ստացած 330 կիլոգրամի դիմաց։ Լուրջ ուշադրություն է դարձվելու գյուղատնտեսության մյուս կուլտուրաների զարգացման վրա։ Է՛լ ավելի է ամրապնդվելու գյուղատնտեսության տեխնիկական բազան։ Եկող տարի գյուղատըն-

տեսությունը կստանա ավելի քան 152 հա-
զար տրակտոր, 135 հազար տրակտորային
գութան, 108 հազար տրակտորային շարքա-
ցան, 54 հազար հացահատիկային ինքնա-
գնաց կոմբայն և 53 հազար հնձիչ։ Եկող
տարվա համար, գյուղատնտեսության զար-
գացման գործին պետությունը հատկացնե-
լու է 19 միլիարդ ռուբլի։

Լուրջ ուշադրություն է դարձվում տրանս-
պորտի զարգացման հարցին։ Խոշոր միջոց-
ներ կհատկացվեն տրանսպորտի հետագա
տեխնիկական վերակառուցման ուղղու-
թյամբ։

Բնակարանային շինարարության չափսե-
րով ու տեմպերով, Սովետական Միությունը
ներկայումս աշխարհում գրավում է առաջին
տեղը։ 1960 թվականին բնակարանային շի-
նարարության համար հատկացվում է ավե-
լի քան 64 միլիարդ ռուբլի, որը կազմում է
ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ
ներդրումների ամբողջ ծավալի մեկ քառորդ
մասը։ 1959 թվականին կկառուցվեն բնա-
կելի տներ 80 միլիոն քառակուսի մետր, իսկ
1960 թվականին՝ 101 միլիոն քառակուսի
մետր ընդհանուր մակերեսով։ Բնակարանա-
յին շինարարության թափը պատկերացնե-
լու համար բավական է ասել, որ 1959—



1960 թվականներին շահագործման հանձրն-
վող բնակելի տների քանակը հավասար կլի-
նի նախառևոլյուցիոն Ռուսաստանի բնա-
կարանային ֆոնդին։ Բացի դրանից, կոլ-
տնտեսականներն ու գյուղական ինտելիգեն-
ցիան 1960 թվականին կկառուցեն մոտա-
վորապես մեկ միլիոն բնակելի տուն։

Մանրածախ ապրանքաշրջանառության
ծավալը եկող տարի կավելանա մոտավորա-
պես 50 միլիարդ ռուբլով և կհասնի 765 մի-
լիարդ ռուբլու։ Զգալիորեն կավելանա մսի,
մսամթերքների, կաթի, յուղի, ձվի, շաքարի,
մրգի վաճառքը։

ՍՍՌՄ 1960 թվականի Պետական բյուջեի
մասին և ՍՍՌՄ 1958 թվականի Պետական
բյուջեի կատարման մասին զեկուցումով
հանդես եկավ ՍՍՌՄ ֆինանսների մինիստրի
տեղակալ Վ. Ֆ. Գարբուզովը։

ՍՍՌՄ 1959 թվականի Պետական բյուջեի
կատարումը սպասվում է. եկամուտներինը
735,8 միլիարդ ռուբլի գումարով, ծախսե-
րինը՝ 698,8 միլիարդ ռուբլի գումարով։
Ծախսերի նկատմամբ եկամուտների գերա-
զանցումը կկազմի մոտավորապես 37 մի-
լիարդ ռուբլի։

ՍՍՌՄ 1960 թվականի Պետական բյուջեի
նախագիծը Գերագույն Սովետի հաստատ-

ման է ներկայացվում. եկամուտներինը՝ 772,1 միլիարդ ռուբլի գումարով, ծախսերինը՝ 744,8 միլիարդ ռուբլի գումարով, ծախսերի նկատմամբ եկամուտների 27,3 միլիարդ ռուբլի գերազանցումով։ Միութենական ռեսպուբլիկաների բյուջեները նախատեսված են 387,3 միլիարդ ռուբլի ընդհանուր գումարով, որն ընթացիկ տարվա համեմատությամբ ավելի է 43,7 միլիարդ ռուբլով։

Սեսիայում քննարկվող օրակարգի երրորդ հարցի՝ ՍՍՌ Միության և միութենական ռեսպուբլիկաների բյուջետային իրավունքների օրենքի նախագծի մասին զեկուցումով հանդես եկավ Ազգությունների Սովետի Օրենսդրական նախագծումների հանձնաժողովի նախագահ, դեպուտատ Դ. Ռասուլովը։

ՍՍՌՄ Պետական բյուջեի էական առանձնահատկությունն այն է, որ նա սերտորեն շաղկապված է ժողովրդատնտեսական պլանի հետ, որոշվում է նրանով և, իր հերթին, ակտիվորեն նպաստում է նրա հաջող կատարմանը։ Օրենքի նախագիծը սահմանում է ՍՍՌՄ Պետական բյուջեն կազմելու, հաստատելու և կատարելու կարգը, սահմանում է միութենական բյուջեի դերը։

Օրենքով միութենական ռեսպուբլիկանե-



րին լայն իրավունքներ են վերապահվում ֆինանսական-բյուջետային հարցերի լուծման ասպարեզում։ Այդ իրավունքների կենսագործման համար միութենական ռեսպուբլիկաներն ունեն անհրաժեշտ ֆինանսական ռեսուրսներ։ Նոր Օրենքի ընդունումը կնպաստի բյուջետային հարցերի ինչպես ընդհանուր միութենական, այնպես էլ ռեսպուբլիկական Օրենսդրության հետագա կատարելագործմանը։

Օրակարգի չորրորդ հարցի՝ ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատին ետ կանչելու կարգի վերաբերյալ Օրենքի նախագծի մասին զեկուցումով հանդես եկավ Միության Սովետի Օրենսդրական նախագծումների հանձնաժողովի նախագահ, դեպուտատ Դ. Ս. Պոլյանսկին։

Սեսիան, այնուհետև անցնում է ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության երկրորդ ու երրորդ սեսիաների միջև ընկած ժամանակամիջոցում ընդունած Հրամանագրերի հաստատմանը։ Այդ հարցի մասին զեկուցեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության քարտուղար, դեպուտատ Մ. Պ. Գեորգաձեն։

Օրակարգի հաջորդ հարցի՝ Սովետական Միության միջազգային դրության և արտա-





քին քաղաքականության մասին ընդարձակ զեկուցումով հանդես եկավ ՍՄԿՊ Կենտկոմի Առաջին քարտուղար, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ ընկ. Ն. Ս. Խրուշչովը։

Ընկ. Ն. Ս. Խրուշչովը մանրամասնորեն վերլուծելով արդի միջազգային դրությունը, նշեց որ ներկայումս Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների, ինչպես նաև բոլոր խաղաղասեր ուժերի ջանքերի շնորհիվ միջազգային դրությունը բարելավվել է, զգալիորեն թուլացել է պետությունների հարաբերությունների մեջ եղած լարվածությունը։

Որո՞նք են այդ փոփոխությունների հիմնական պատճառները։ Դա նախ և առաջ Սովետական Միության, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի բոլոր երկրների հզորության և միջազգային ազդեցության աճն է։

Այնուհետև ընկ. Ն. Ս. Խրուշչովը հանգամանորեն խոսում է խաղաղ գոյակցության, չլուծված հարցերի հետագա կարգավորման և զինաթափման պրոբլեմի լուծման հարցի մասին։

Զինաթափման պրոբլեմի սովետական ծրագրի էությունը հետևյալն է՝ ամենասեղմ ժամկետում, մոտավորապես չորս տարվա



ընթացքում, իրագործել պետությունների ընդհանուր ու լրիվ զինաթափում։ Դա նշանակում է, որ պետք է արձակվեն բոլոր զինված ուժերը, վերացվեն բոլոր սպառազինությունները, դադարեցվի ռազմական արտադրությունը։ Վերջնականապես և ընդմիշտ կարգելվեր ու կոչնչացվեր միջուկային, քիմիական, բակտերիոլոգիական ու հրթիռային զենքը։ Կվերացվեին ռազմական մինիստրությունները ու գլխավոր շտաբները, կվերացվեին օտարերկրյա ռազմական բազաները ուրիշի տերիտորիաներում։

Վերջում ընկ. Ն. Ս. Խրուշչովը ասաց. «Խորին գոհունակության զգացումով մենք կարող ենք հայտարարել, որ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի բոլոր երկրները համախմբված են, ինչպես երբեք։ Նրանք միասնական շարքով հանդես են գալիս պատմական խնդիրը լուծելու՝ մարդկությանը պատերազմներից փրկելու և խաղաղության ու սոցիալական առաջադիմության ուղիով ժողովուրդների զարգացումն ապահովելու համար»։

Վերջում քննարկվող բոլոր հարցերի վերաբերյալ Գերագույն Սովետի երրորդ սեսիան ընդունում է համապատասխան օրենքներ և դիմում՝ ուղղված աշխարհի բոլոր երկրների պառլամենտներին։

# ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՊԱՏՄԱԿԱՆ ՄԻՍԻԱՆ

Ֆ. ԻՎԱՆՈՎ

Որքան հեռանում են ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ Ն. Ս. Խրուշչովի ԱՄՆ ժամանած անմոռանալի օրերը, այնքան լրիվ և խորը կերպով երևան է հանվում այդ պատմական այցելության նշանակությունը երկու մեծ տերությունների փոխադարձ հարաբերությունների գործում, ամբողջ ժամանակակից միջազգային հարաբերությունների գործում։

«Խրուշչովի այցը դեռևս կքննարկվի հետագա շատ օրերի և շաբաթների, իսկ պատմաբանները՝ հնարավոր է շատ տարիների ընթացքում» գրել է «Նյու-Յորք Թայմս» թերթը ԱՄՆ-ից Ն. Ս. Խրուշչովի վերադարձի հաջորդ օրը։ Ամերիկյան թերթը ճիշտ է։ Իրոք, ՍՍՌՄ կառավարության ղեկավարի ԱՄՆ կատարած ուղևորությունից անցել է ոչ քիչ օրեր, բայց դեպի նա եղած հետաքրքրությունը ամբողջ աշխարհում առաջվա



պես չի թուլանում, նրա արդյունքների մասին եղած նյութերը ամբողջ աշխարհի թերթերի էջերից ցած չեն իջնում, նա աշխուժորեն մեկնաբանվում է միջազգային հասարակայնության ամենատարբեր շրջաններում։

Ինչպիսին են այդ արդյունքները։

Ինչպես նշում է համաշխարհային մամուլը, Ն. Ս. Խրուշչովի ժամանումը ԱՄՆ խորը և անջնջելի հետք է թողել ամերիկյան ժողովրդի մտքում և սրտում։ Հայտնի է, որ երկար տարիների ընթացքում «սառը պատերազմի» ամերիկյան ռեակցիոն պրոպագանդան ստերի ամբողջ սարեր է կուտակել ՍՍՌՄ-ի մասին, սովետական ժողովրդի կյանքի մասին, Սովետական պետության ներքին և արտաքին քաղաքականության մասին։ Սովետական կառավարության ղեկավարի հանդիպումները գործարար մարդկանց, քաղաքական և հասարակական գործիչների, բանվորների, ֆերմերների, ԱՄՆ-ի ինտելիգենցիայի հետ, որոնք հաղորդվեցին ռադիոյով և հեռուստացույցով, լուսաբանվեցին թերթերում, միլիոնավոր ամերիկացիների հնարավորություն տվեցին Սովետական պետության ամենահեղինակավոր ներկայացուցչի բերանից լսել ճշմարտությունը՝

Սովետական մեծ երկրի մասին, սովետական ժողովրդի և նրա կառավարության խաղաղասիրական ձգտումների մասին։ Ն. Ս. Խրուշչովի վառ, խոր բովանդակալից, համոզիչ ելույթները ամերիկյան ժողովրդի տարբեր խավերի ներկայացուցիչների առջև մեծ տպավորություն թողեցին ամերիկացիների վրա։ Ն. Ս. Խրուշչովի անհողդողդ նվիրվածությունը կոմունիզմի իդեաներին, նրա անկեղծությունն ու ուղղամտությունը, սկզբունքայնությունն ու կայունությունը սոցիալական առաջադիմության ազնիվ գաղափարները պաշտպանելիս, խաղաղություն և բարեկամություն ժողովուրդների միջև, նրա սրտառուչ վերաբերմունքը դեպի հասարակ մարդիկ, նրա ժողովրդական երգիծանքը և կրակոտ էներգիան, այդ բոլորի շնորհիվ Սովետական կառավարության ղեկավարը ամերիկյան ժողովրդի լայն մասսաների մեջ խոր հարգանք վաստակեց։

Համակված լինելով խաղաղասիրական ոգով և «սառը պատերազմը» լիկվիդացնելու ձգտումներով, Ն. Ս. Խրուշչովի ելույթները ԱՄՆ-ում ամենուրեք գտնում էին կենդանի արձագանք։ Սովետական կառավարության ղեկավարը գրում է անգլիական «Բիրմինգ-



համ պոստ» թերթը, «ստիպեց շատ ամերիկացիների հավատալ, որ պետք է լինի և կա «սառը պատերազմից» դուրս գալու ելք»։

ԱՄՆ-ի որոշակի շրջաններ շահագրգռված չլինելով սովետա-ամերիկյան հարաբերությունների բարելավմամբ, քիչ ջանք չգործադրեցին, որպեսզի Ն. Ս. Խրուշչովի շուրջը ստեղծեին տխրահռչակ «սառը քաղաքավարության» մթնոլորտ։ Բայց այդ նրանց բացարձակ չհաջողվեց։ ԱՄՆ-ում ամենուրեք, սկսած Վաշինգտոնից մինչև Սան-Ֆրանցիսկո, Նյու-Յորքից մինչև Այովա նահանգն ու Պիտսբուրգը ամերիկացիները ջերմորեն ու սրտառուչ դիմավորեցին ՍՍՌՄ կառավարության ղեկավարին։ Դրանով արտահայտվեց ամերիկյան ժողովրդի խաղաղասիրական ու բարեկամական վերաբերմունքը դեպի սովետական ժողովուրդը, ամերիկացիների համակրանքն ու հարգանքը խաղաղասեր մեծ Սովետական երկիրը, առանց որի երկար տարիներ չէին կարող հանգցնել «սառը պատերազմը»։ Ամերիկյան ժողովրդի այդ բարի զգացումները իրենց վառ արտահայտությունը գտան կառավարական նամակներում և հեռագրերում, որոնք անվերջ հոսանքով ուղարկվում էին Ն. Ս. Խրուշչովի անունով, նրա ԱՄՆ-ում գտնվ-

վելու ժամանակ։ Ոչ քիչ թվով նման ջերմագին նամակներ ստացվել են նաև ամերիկյան թերթերի և ամսագրերի խմբագրություններում։

Ահա դրանցից մեկը. «Մենք կցանկանայինք,— գրում է «Նյու-Յորք թայմս» թերթում Միչիգան նահանգից Ա. Պիրսոնը,— որպեսզի պարոն Խրուշչովը իմանար, որ ամերիկացիների մեծ մասը հիացած են իրենով և հարգում են իրեն որպես մեծ երկրի հիանալի ժողովրդի ներկայացուցիչ»։

Ամերիկա կատարած Ն. Ս. Խրուշչովի շրջագայության ժամանակ տեղի ունեցան նրա զրույցները ԱՄՆ-ի պրեզիդենտ Դ. Էյզենհաուերի հետ, որի ընթացքում երկու տերությունների գործիչները շարադրեցին իրենց կառավարությունների դիրքը միջազգային կարևորագույն հարցերի, ինչպես նաև սովետա-ամերիկյան հարաբերությունների բարելավման վերաբերյալ։ ՍՍՌՄ-ի և ԱՄՆ-ի կառավարությունների ղեկավարների միջև տեղի ունեցած այդ բարեկամական և անկեղծ մտքերի փոխանակության կարևորագույն արդյունքը եղավ սովետա-ամերիկյան համատեղ կոմյունիկեի շարադրանքը, որը մամուլում հրապարակվեց ԱՄՆ-ի պրեզիդենտի մերձքաղաքային ռեզիդենցիա-



յում՝ Քեմպ Դեվիդում, նրանց զրույցից հետո։

Այդ փաստաթուղթը խոր բավականությամբ ընդունեցին բոլորը, ովքեր շահագրգռված էին խաղաղության ամրապնդմամբ։ Սոցիալիստական լագերի երկրների ժողովուրդները, ամբողջ պրոգրեսիվ մարդկությունը ԱՄՆ-ում կատարած Ն. Ս. Խրուշչովի այցի արդյունքներն ընդունեցին, որպես խաղաղության ուժերի մեծ հաղթանակ։ Այդ արդյունքներին հավանություն տվեցին երկրագնդի բոլոր կոնտինենտներում գտնվող տարբեր երկրների պետական և հասարակական գործիչները, մամուլի բազմաթիվ տեսաբանները։ Մեկնաբանելով Ն. Ս. Խրուշչովի և Դ. Էյզենհաուերի զրույցները, նրանք հատուկ բավականությամբ նշում են երկու մեծ տերությունների համաձայնությունն այն բանում, որ բոլոր միջազգային չկարգավորված հարցերը պետք է լուծվեն ոչ թե ուժ գործադրելով, այլ խաղաղ միջոցներով, բանակցությունների միջոցով։

Այդ կապակցությամբ համաշխարհային լայն հասարակայնությունը արդարացիորեն իր հույսերը կապում է ընդհանուր խաղաղության պահպանման ու ամրապնդման հետ։ «Սովետա-ամերիկյան կոմյունիկեն,—

գրում է իտալական «Պոպոլո» թերթը,— թույլ է տալիս բոլոր ժողովուրդներին փորձել բավականության և հույսերի զգացումները։ Այդ կոմյունիկեն իր մեջ պարունակում է երկու երկրների կառավարությունների ղեկավարների կոնկրետ և պատասխանատու պարտավորությունները, որոնք իրենց ժողովրդի անունից հայտնեցին, որ բոլոր միջազգային վիճելի հարցերը, որոնք գոյություն ունեն այժմ, իսկ նրանք շատ են, և անմիտ բան կլինի մոռանալ նրանց մասին, կլուծվեն խաղաղ միջոցներով, բացառելով ուժ գործադրելը...»։

ՍՍՌՄ-ի և ԱՄՆ-ի կառավարությունների ղեկավարները իրենց զրույցի հետևանքով համաձայնվեցին այն բանում, որ ընդհանուր զինաթափումը ամենակարևորագույն հարցն է, որը ներկայումս կանգնած է խաղաղության առաջ։ «Երկու կառավարություններն էլ,— ասված է սովետա-ամերիկյան կոմյունիկեում,— կգործադրեն բոլոր ջանքերը այդ պրոբլեմի կոնստրուկտիվ լուծմանը հասնելու համար»։ ԱՄՆ-ում գտնվելու ժամանակ Ն. Ս. Խրուշչովը ելույթ ունենալով Միավորված Ազգերի Կազմակերպության Գլխավոր Ասամբլեայի սեսիայում, նրա քննարկմանը ներկայացրեց ընդհանուր



և լրիվ զինաթափման մասին Դեկլարացիա։ Սովետական Միության առաջարկությունը բոլոր զինված ուժերը լիկվիդացնելու և զենքի բոլոր տեսակները ոչնչացնելու մասին, մարդկությանը ցույց է տալիս ամենագործուն և ճիշտ ուղին ընդմիշտ խուսափելու նոր կործանարար պատերազմների աղետներից ու սարսափներից։ Սովետական Միության այդ համարձակ և շնորհակալ նախաձեռնությանը ջերմորեն հավանություն տվեց ամբողջ խաղաղասեր մարդկությունը։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահի և ԱՄՆ-ի պրեզիդենտի միջև տեղի ունեցած զրույցի ժամանակ քննարկվեցին նաև միջազգային հասունացած ուրիշ պրոբլեմներ։ Երկու կառավարությունների ղեկավարները գերմանական հարցի վերաբերյալ կարծիքներ փոխանակեցին, ընդ որում Գերմանիայի հետ խաղաղության պայմանագրի հարցի մասին։ Բանակցությունների մասնակիցների միջև ձեռք բերվեց անհրաժեշտ ըմբռնողություն Բեռլինի հարցի շուրջ որոշում ընդունելու վերաբերյալ բանակցություններ սկսելու մասին, որը կբավարարի բոլոր շահագրգռված կողմերին և կնպաստի խաղաղության պահպանման շահերին։ Բացի այդ, Ն. Ս. Խրուշչովի և Դ. Էյզենհաուերի միջև տեղի

ունեցան օգտակար զրույցներ սովետա-ամերիկյան հարաբերությունների մի շարք հարցերի վերաբերյալ։ Որոշվեց նաև, որ ԱՄՆ-ի պրեզիդենտի պատասխան այցը Սովետական Միություն տեղի կունենա 1960 թվականի գարնանը, այցի ստույգ օրվա մասին կհամաձայնեցվի դիվանագիտական ճանապարհով։

Գնահատելով ԱՄՆ-ի պրեզիդենտի հետ ունեցած իր զրույցների նշանակությունը Ն. Ս. Խրուշչովը սեպտեմբերի 27-ին գրեց ուղերձ ԱՄՆ-ի պրեզիդենտին՝ «Մեր մեջ տեղի ունեցած մտքերի փոխանակությունը միջազգային կարևորագույն պրոբլեմների և սովետա-ամերիկյան հարաբերությունների հարցերի մասին ցույց տվեց, որ ավելի ու ավելի ուժեղանում են ձեռնարկված անհրաժեշտ միջոցառումները «սառը պատերազմը» լիկվիդացնելու, մեր երկրների միջև վստահություն և փոխադարձ ըմբռնման իրադրություն ստեղծելու նպատակով։ Մեր հանդիպումներն անկասկած կներգործեն միջազգային լարվածությունը թուլացնելու, խաղաղության ընդհանուր գործը ամրապնդելու վրա»։

Դ. Էյզենհաուերը Սպիտակ տան պրեսս-կոնֆերանսում հայտարարեց, որ ըստ իր



կարծիքի, Ն. Ս. Խրուշչովի այցը սկիզբ դրեց ամերիկա-սովետական հարաբերությունների բարելավման պրոցեսին։

Միջազգային հասարակայնության լայն շրջանները համաձայն են այն գնահատականին, որ տվեցին Քեմպ Դեվիդում տեղի ունեցած զրույցի մասնակիցները։ Նրանք քննության առան այդ զրույցների արդյունքները, որպես ՍՍՌՄ-ի և ԱՄՆ-ի միջև նոր էտապի սկիզբը, որպես միջազգային լարվածության թուլացման և «սառը պատերազմը» լիկվիդացնելու ճանապարհին խոշոր քայլ։

«Մենք կարծում ենք,— գրում է «Վաշինգտոն պոստ էնդ Թայմս հերալդ» թերթը,— որ ինչպես պրեզիդենտը, այնպես էլ պրեմյեր-մինիստր Խրուշչովը գոհ են իրենց զրույցներից, ուստի ամերիկյան և սովետական ժողովուրդները հիմք ունեն նույնպես գոհ լինելու»։ «Նյու-Յորք հերալդ տրիբյուն» թերթը խմբագրական հոդվածում ընդգծում է, որ «միջազգային լարվածությունը թուլացնելու ճանապարհին Քեմպ Դեվիդում ձեռք բերվեց պրոգրես...»։ Փարիզյան «Ֆրանս սուար» թերթը Ն. Ս. Խրուշչովի ուղևորության արդյունքների մասին զետեղել է հաղորդագրություն հետևյալ խորագրով՝ «Ջնհալը Մոսկվայի և Վաշինգտոնի

հարաբերությունների միջև, լավագույն փոխադարձ հարաբերություններ ԱՄՆ-ի և ՍՍՌՄ-ի միջև, այսպիսին են Խրուշչովի Միացյալ Նահանգներում կատարած այցի հիմնական արդյունքները»։

«Որպես Արևելքի և Արևմուտքի միջև լարված հարաբերությունները թուլացնելու առաջին համարձակ փորձ,— հայտարարում է հնդկական «Նեյշնել Հերալդ» թերթը,— Խրուշչովի անդրատլանտյան ուղևորությունն ավարտվեց մեծ հաջողությամբ»։ ««Սառը պատերազմի» ամենասառը փուլը անցավ, սառույցը սկսեց հալվել»։ Մամուլի բազմաթիվ օրգաններ գտնում են, որ Ն. Ս. Խրուշչովի այցի հետևանքով ԱՄՆ-ում բացվել է մեծ տերությունների կառավարությունների ղեկավարների առաջիկայում խորհրդակցություն գումարելու ճանապարհը։

Այո «սառը պատերազմի» սառույցը անկասկած սկսել է հալվել։ Բայց սխալ կլինի կարծել, որ այժմ ամեն ինչ հարթ է ընթանում, որ ապահովված է կայուն խաղաղությունը։ Ոչ, հարկավոր է դեռևս շատ ուժեր լարել, որպեսզի միջազգային հարաբերությունների վիճելի հարցերը լուծվեն, լիկվիդացվեն պետությունների հարաբերությունների միջև եղած անվստահությունն ու



կասկածամտությունը, հասնել լիակատար փոխըմբռնման, ապահովել նրանց կայուն խաղաղ համագործակցությունը։ Չի կարելի մոռանալ, որ ԱՄՆ-ում և մյուս արևմտյան երկրներում կան այնպիսի ուժեր, որոնք հակազդում են միջազգային լարվածության թուլացմանը և «սառը պատերազմի» ու սպառազինման մրցավազքի կողմնակիցներն են։ Ահա թե ինչու ամբողջ աշխարհի խաղաղասեր հասարակայնությունը ջերմորեն ողջունեց ընկեր Ն. Ս. Խրուշչովի ԱՄՆ-ում կատարած ուղևորության արդյունքները և կոչ արեց բոլոր բարի կամքի մարդկանց չթուլացնել իրենց ուժերը, «սառը պատերազմը» վերջնականապես լիկվիդացնելու և կայուն խաղաղության համար մղվող պայքարում։ Սովետական Միությունը իր կողմից, ինչպես և առաջ, կանի ամեն ինչ, որպեսզի խաղաղության գործը վերջնականապես հաղթանակի։

«Մենք,— ԱՄՆ-ում կատարած ուղևորությունից վերադառնալով Հայրենիք հայտարարեց Ն. Ս. Խրուշչովը,— մեր գործողությունների մեջ հենվում ենք բանականության վրա, ճշմարտության վրա, ամբողջ ժողովրդի աջակցության վրա։ Բացի դրանից, մենք հենվում ենք մեր հզոր պոտեն-

*ցիալի վրա։ Եվ թող իմանան նրանք, ովքեր ուզում են պահպանել «սառը պատերազմի» վիճակը, որպեսզի վաղ թե ուշ այն դարձնեն տաք պատերազմ, թող նրանք իմանան, որ մեր ժամանակներում պատերազմ կարող է սկսել խելագարը, որն ինքն էլ կոչնչանա նրա բոցերի մեջ»։*

*Սովետական մարդիկ ջերմորեն ողջունեցին Ն. Ս. Խրուշչովին բարեկամության և խաղաղության պատմական միսիան հաջողությամբ ավարտելու համար։ Նրանք ոգեվորվելով ՍՍՌՄ խաղաղասիրական արտաքին քաղաքականության ձեռք բերած նոր վիթխարի հաջողություններով, լի են վճռականությամբ պայքարելու միջազգային լարվածության հետագա թուլացման համար, ժողովուրդների միջև խաղաղության և բարեկամության մեծ գաղափարների հաղթանակի համար։*

---

# ՍՈՎԵՏԱՀԱՅ ԳԻՐՔԸ ԵՎ ՄԱՄՈՒԼԸ

*Գ. ԱՂԱԽԱՆՅԱՆ*

*ՀՍՍՌ* Պետական գրապալատի գլխավոր բիբլիոգրաֆ

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի ազգային իմաստուն քաղաքականության շնորհիվ, ստեղծվել են անհրաժեշտ բոլոր պայմանները, ՍՍՌՄ բազմազգ ժողովուրդների տնտեսության ու կուլտուրայի աննախընթաց զարգացման համար։*

*Հայ ժողովուրդը պատմական կարճ ժամանակամիջոցում վիթխարի հաջողությունների է հասել, ստեղծելով ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական իր կուլտուրան։*

*Հայ գրքի և պարբերական մամուլի պատմությունը շատ հին է։ Այն կապված է IV դարի վերջում հայ գրերի գյուտի հետ։*

*Գիտնական-քահանա Մեսրոպ Մաշտոցը (361—440 թ. թ.) երկարատև ու համառ ջանքերից հետո ստեղծեց հայկական այ-*

բուքենը, որը նպաստեց մեր ազգային գրքի և գրականության զարգացմանը։

Չնայած օտար նվաճողների բազմաթիվ ասպատակությունների և կատարած ավերածությունների հայ ժողովուրդը պահպանել է աշխարհի տարբեր վայրերում շուրջ 31.000 անուն ձեռագիր գիրք։

Սովետական Հայաստանի նորաստեղծ կառավարության առաջին իսկ դեկրետներից մեկը վերաբերվում է ձեռագիր գրքերին, որով ձեռագիր գիրքը ճանաչվում է պետության սեփականություն և էջմիածնի մատենադարանի ֆոնդերի բազայի հիման վրա, կազմակերպվում է Հայաստանի պետական ձեռագրատուն-Մատենադարանը (1959 թ. վերանվանվել է ՀՍՍՌ Մինիստրների Սովետին կից ձեռագրերի գիտա-հետազոտական ինստիտուտ-Մատենադարան)։

Ներկայումս մատենադարանի ֆոնդը կազմում է՝ 13.500 ձեռագիր և պատառիկներ։ Այդ ֆոնդերի մեծ մասը հավաքված են սովետական իշխանության տարիներին։

Ձեռագիր գրքերի մի զգալի մասը գտնըվում է Վենետիկի Մխիթարյան միաբանության գրադարանում (մոտ 4.000), Երուսաղեմի հայ պատրիարքարանում՝ (մոտ 3.000) և աշխարհի խոշորագույն գրապա-



հոցներում՝ ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի, Լենինգրադի Սալտիկով-Շչեդրինի անվան, Բրիտանական թանգարանի, Փարիզի ազգային, Բեռլինի պետական գրադարաններում և այլ վայրերում։

Ինչպես ամեն մի ժողովրդի, այնպես էլ հայ ժողովրդի համար, ձեռագիր գիրքը խթան հանդիսացավ ստեղծելու տպագիր գիրք, որը խոշոր դեր է խաղացել նրա հասարակական-քաղաքական ու կուլտուրական կյանքում։

Հայ առաջին տպագիր գիրքը հրատարակվել է Գուտենբերգի տպագրական գյուտի հայտնագործումից 55 տարի հետո, 1512 թվականին Վենետիկում (Հակոբ Մեղապարտի՝ «Պարզատումար»-ը)։ Հնդկաստանի Մադրաս քաղաքում 1794 թվականին լույս է տեսել «Ազդարար» անդրանիկ հանդեսը։

XVI—XX դարերում Ռուսաստանում, Արևմտյան Հայաստանում ու աշխարհի տարբեր վայրերում լույս են տեսել հազարավոր անուն հայերեն ինքնուրույն և թարգմանական գրքեր ու բրոշյուրներ, հանդեսներ ու լրագրեր։ Սակայն հայ գիրքը և պարբերական մամուլն իր իսկական զարգացումը սկսել է Հայաստանում սովետական կարգերի հաստատումից հետո։

*Ռեսպուբլիկայում 1921 թվականին կազմակերպվում է Պետական հրատարակչություն (Հայպետհրատ), որը հրատարակչական լայն գործունեություն է ծավալում։*

*Եթե Հայաստանում 1913 թվականին լույս է տեսել ընդամենը 55 անուն գիրք ու բրոշյուր 80 հազար ընդհանուր տպաքանակով, իսկ դաշնակների տխրահռչակ տիրապետության տարիներին (1918—1920 թ. թ.) 46 անուն լղարիկ բրոշյուրներ, ապա միայն 1958 թվականին հրատարակվել է 1104 անուն գիրք ու բրոշյուր 7 միլիոն 331 հազար օրինակ ընդհանուր տպաքանակով, իսկ ռեսպուբլիկայում սովետական իշխանության տարիներին՝ (1921—1958 թ. թ.) տպագրվել է 21.422 անուն գիրք ու բրոշյուր 120 միլիոն 36 հազար օրինակ ընդհանուր տպաքանակով։*

*Գիրքը հաստատուն մուտք է գործել սովետական մարդկանց կենցաղի մեջ։ Գիրքը սովետական մարդու հավատարիմ օգնականն ու բարեկամն է, նա ընդլայնում է նրա աշխարհայացքը, հարստացնում նրա գիտելիքը, օգնում է աշխատանքում ձեռք բերելու նորանոր հաջողություններ։*

*Սովետական Հայաստանում, առաջին անգամ հայ իրականության մեջ, հրատարակ-*



*վում են գրքեր բոլոր գիտությունների բնագավառների՝ ինչպես հասարակական-քաղաքական, գրական-գեղարվեստական, այնպես էլ ճշգրիտ և կիրառական գիտությունների գծով։*

*Բազմազան անուններով հրատարակված գրքերի մեջ իր ուրույն տեղն ունի մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրների երկերի հրատարակությունները։ Ուստի և պատահական չէ այն փաստը, որ Հայաստանի Պետական հրատարակչության հրատարակած առաջին գիրքը՝ Ստեփան Շահումյանի կողմից թարգմանված Կ. Մարքսի «Վարձու աշխատանք և կապիտալ» աշխատությունն է։*

*Ճիշտ է, անցյալում հայ աշխատավոր մասսաները մայրենի լեզվով ծանոթ են եղել մարքս-լենինյան ուսմունքին, ուսումնասիրել են գիտական կոմունիզմի հիմնադիրների առանձին աշխատությունները, սակայն ցարական Ռուսաստանում հնարավոր չէր դա լայնորեն իրականացնել և այն դարձնել լայն մասսաների սեփականությունը։*

*Ներկայումս հայերեն լեզվով թարգմանվել և հրատարակվել են մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրների համարյա բոլոր հիմնական աշխատությունները։ Անցած 38 տարվա ընթացքում ռեսպուբլիկայում հրա-*

տարակվել է 343 անուն գիրք՝ 2 միլիոն 200 հազար օրինակ ընդհանուր տպաքանակով։ Այդ թվում Կ. Մարքսի երկերից 29 անուն՝ 205 հազար օրինակ տպաքանակով, Ֆ. Էնգելսի երկերից՝ 47 անուն՝ 295 հազար օրինակ տպաքանակով, Վ. Ի. Լենինի երկերից՝ 248 անուն՝ 1 միլիոն 567 հազար օրինակ տպաքանակով։

Միանգամայն նոր է ռեսպուբլիկայի համար տեխնիկա-մասնագիտական գրականության հրատարակումը։ Հայաստանում 30 տարում հրատարակվել է շուրջ 800 անուն գիտա-տեխնիկական գրականություն՝ 2 միլիոն 466 հազար օրինակ տպաքանակով և 2320 անուն գյուղատնտեսական գրականություն՝ 12 միլիոն 400 հազար օրինակ տպաքանակով։

Հսկայական թափով աճել է գեղարվեստական գրականության հրատարակումը։

Անցած 30 տարվա ընթացքում Հայաստանում հրատարակվել են (ներառյալ մանկական գեղարվեստական գրականությունը) 3.578 անուն գիրք ու բրոշյուր, 19 միլիոն 417 հազար օրինակ տպաքանակով։

Ռեսպուբլիկայում լայն հիմքերի վրա է դրված դասագրքերի հրատարակման գործը։ 1938—1958 թ. թ. ռեսպուբլիկայում հրատարակվել են 3.871 անուն միջնակարգ և բարձրագույն ուսումնական հաստատությունների համար դասագրքեր և ձեռնարկներ, 39 միլիոն 632 հազար օրինակ ընդհանուր տպաքանակով։



Հայաստանում սովետական կարգերի հաստատումից հետո աննախընթաց վերելք է ապրել նաև պարբերական մամուլը։

Եթե նախասովետական Հայաստանում, 1913 թվականին լույս է տեսել 2 անուն ամսագիր, 1920 թ.՝ 6 անուն, ապա 1958 թ. հրատարակվել է 60 անուն ամսագիր 1 միլիոն 178 հազար օրինակ տպաքանակով։

1913 թ. լույս է տեսել 6 անուն լրագիր, 1920 թ.՝ 13 անուն, ապա 1958 թ. լույս է տեսել 96 անուն լրագիր, 66 միլիոն 488 հազար տարեկան օրինակ տպաքանակով։

Որպեսզի մոտավոր գաղափար կազմել մեզ մոտ գրքի լայնորեն տարածման մասին բավական է ասել, որ ներկայումս Հայկական ՍՍՌ-ի ավելի քան 2.800 գիտական, տեխնիկական, քաղաքային, շրջանային, գյուղական ու արհմիութենական գրադարաններում կենտրոնացված է 16 միլիոն 500 հազար օրինակ զանազան գրքեր, բրոշյուրներ և պարբերականներ։

---

# ԴԵՊԻ ՀԿՊ XXI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

## (Թվեր և փաստեր)

*Մեր ռեսպուբլիկայի ժողտնտխորհի Թեթև արդյունաբերության ձեռնարկությունների կոլեկտիվները ջերմ խանդավառությամբ ընդունեցին Հայաստանի Կոմպարտիայի XXI համագումար հրավիրելու լուրը։ Այժմ ի պատիվ համագումարի, նրանք ջանք չեն խնայում յոթնամյակի առաջին տարվա պլանները պատավով կատարելու, երկրին ավելի շատ և ավելի բարձրորակ արտադրանք տալու համար։ Ահա թվեր և փաստեր այդ մասին։*

★ *Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի Թեթև արդյունաբերության վարչության ձեռնարկությունները գերակատարել են այս տարվա 9 ամսվա արտադրական պլանները և պլանից դուրս երկրին տվել 18 միլիոն 900 հազար ռուբլու արտադրանք։*

★ *Թեթև արդյունաբերության վարչության ձեռնարկությունների կոլեկտիվները 143 տոկոսով են կատարել կարևորագույն արտադրանքներից մեկի՝ բամբակաթելի թողարկման 9 ամսվա պլանը։ Նրանք, նույն ժամանակամիջոցում երկրին տվել են 39 միլիոն 478 հազար քառակուսի մետր բամբակե գործվածք։*



★ *Հայաստանի տեքստիլ արդյունաբերության ձեռնարկությունները անընդհատ ավելացնում են աշխատավորների կարիքների համար թողարկվող նուրբ գործվածքների արտադրությունը։ Ռեսպուբլիկայում և նրա սահմաններից դուրս վաճառքի է ուղարկվել 3 միլիոն 909 հազար քառակուսի մետր բարձր որակի բրդե և 4 միլիոն 504 հազար քառակուսի մետր մետաքսե գործվածքեղեն։*

★ *Յոթնամյակի առաջին տարվա պլանները գերազանց ցուցանիշներով են կատարվել նաև տրիկոտաժի արտադրության գծով։ Ժողտնտխորհի տրիկոտաժի ձեռնարկությունները անցած 9 ամսում երկրին տվեցին 1 միլիոն 253 հազար հատ տրիկոտաժե վերնազգեստ, 16 միլիոն 65 հազար հատ սպիտակեղեն։ Տրիկոտաժե արտադրանքի թողարկման պլանը գերակատարված է։*

★ *Նույն ժամանակամիջոցում ժողտնտխորհի կոշիկի գործարաններն ու ֆաբրիկաները արտադրել են 3 միլիոն 669 հազար զույգ կոշիկ և 22 միլիոն 846 հազար զույգ կանացի ու տղամարդու գուլպա։*

★ *Երևանի Կլարա Ցետկինի անվան, Մարտի 8-ի անվան և «Կրասնիյ շվեյնիկ» կարի ֆաբրիկաները գերակատարելով այս տարվա 9 ամսվա պլանները, պլանից դուրս երկրին տվել են 3 միլիոն 600 հազար ռուբլու արտադրանք, որի 1 միլիոն 312 հազար ռուբլու ապրանքեղենը բաց է թողնվել հումքի, վառելիքի և էլեկտրաէներգիայի խնայողության հաշվին։*

★ Ստանձնած պարտավորությունները պատվով են կատարում Երևանի Շահումյանի շրջանի Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատի և Ստալինի անվան տրիկոտաժի գործարանի կոլեկտիվները։ Նրանցից առաջինը անցած 9 ամսվա արտադրական պլանը կատարել է 103, իսկ երկրորդը՝ 108 տոկոսով։

Այժմ նրանք պայքարում են գերազանց ցուցանիշներով փակել 1959 թվականը։

★ Երևանի նուրբ բրդյա գործվածքեղենի կոմբինատի կոլեկտիվը 9 ամսում երկրին տվել է 30 հազար մետր կամ 1 միլիոն 250 հազար ռուբլու հագուստի բարձրորակ գործվածքեղեն։

★ Կոշիկի առաջին ֆաբրիկան այս տարվա 9 ամսվա պլանը կատարել է 101 տոկոսով և պլանից դուրս երկրին տվել 181 հազար ռուբլու արտադրանք, կոշիկի չորրորդ ֆաբրիկան՝ 103 տոկոսով և պլանից դուրս երկրին տվել 295 հազար ռուբլու արտադրանք։ Նույն ժամանակամիջոցում «Երկոշ» ֆաբրիկան հումքի խնայողության հաշվին արտադրել է 70 հազար ռուբլու կոշկեղեն։

★ Երևանի քաղաքային Սովետի տեղական արդյունաբերության ձեռնարկությունները ոչ միայն գերակատարել են այս տարվա անցած 9 ամսվա արտադրական պլանները, այլև պլանից ավել թողարկել են 10 միլիոն 600 հազար ռուբլու արտադրանք։

---

## ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

# ՄՈՆՂՈԼԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ 35-ՐԴ ՏԱՐԻՆ

Զ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու

Մոնղոլիան գտնվում է Կենտրոնական Ասիայում և սահմանակից է Սովետական Միությանը ու Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկային։ Նրա տերիտորիան հավասար է 1 միլիոն 531 հազար քառակուսի կիլոմետրի։ 1956 թվականի տվյալներով Մոնղոլիան ունի մոտ մեկ միլիոն բնակիչ։ Երկրի բնակչության 70 տոկոսը զբաղվում է գյուղատնտեսությամբ, 8 տոկոսը աշխատում է արդյունաբերության մեջ։ Մայրաքաղաքը Ուլան-Բատորն է՝ ավելի քան հարյուր հազար բնակչությամբ։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի անմիջական ազդեցությամբ Մոնղոլիայում 1921 թվականին ժողովրդա-

կան պարտիայի (1924 թվականից, այդ պարտիան կոչվում է Մոնղոլիայի ժողովրդա-ռևոլյուցիոն պարտիա՝ ՄԺՌՊ) գլխավորած ռևոլյուցիան հաղթանակով պսակվեց։ 1924 թվականին Մոնղոլիան հռչակվեց ռեսպուբլիկա։ Մոնղոլ աշխատավոր ժողովուրդը ձեռնամուխ եղավ իր երջանիկ կյանքի կառուցմանը։ Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկան հանդիսացավ առաջին երկիրը, որտեղ Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո սկսեց կենսագործվել Վ. Ի. Լենինի ուսմունքն այն մասին, որ առաջավոր երկրների հաղթանակած պրոլետարիատի օգնությամբ հետամնաց երկրները կարող են անցում կատարել դեպի սոցիալիզմ, խուսափելով կապիտալիզմից։

Անցած երեսունհինգ տարիների ընթացքում մոնղոլ ժողովուրդը Սովետական Միության անշահախնդիր օգնությամբ, հաղթահարելով դարավոր հետամնացությունը, հսկայական թռիչք է կատարել կյանքի բոլոր բնագավառներում և ֆեոդալիզմից անցում է կատարում դեպի սոցիալիզմ։ Անճանաչելի փոխվել են այսօրվա Մոնղոլիան ու նրա աշխատավոր մարդիկ։ Երկրում աննախընթաց չափով զարգացել են ոչ միայն



տնտեսության հին ճյուղերը, առաջին հերթին անասնապահությունը, այլև ստեղծված են ժամանակակից արդյունաբերական ձեռնարկություններ, տրանսպորտ ու գյուղատնտեսություն։ Ծայրահեղ հետամնաց, քոչվոր անասնապահների երկիրը վերածվել է ագրարային-արդյունաբերական ռեսպուբլիկայի։ Այստեղ ստեղծվել է բանվոր դասակարգ, կազմավորվել է ազգային ինտելիգենցիա։ Լայն զարգացում է ստացել քարածխային, լեռնահանքային, մետաղամըշակման, նավթային, էներգետիկ, թեթև և սննդի արդյունաբերությունը։ Ստեղծված է ավտոմոբիլային, երկաթուղային և օդային տրանսպորտ։ Ուլան-Բատոր—Ջամին Ուդե երկաթուղագծի կառուցման շնորհիվ երկաթուղային անմիջական կապ ստեղծվեց ՍՍՌՄ-ի, Մոնղոլիայի և Չինաստանի միջև։ Ռեսպուբլիկայի մայրաքաղաք Ուլան-Բատորն օդային ուղիներով կապված է Մոսկվայի և Պեկինի, սոցիալիստական մյուս երկրների մայրաքաղաքների հետ։

Հիրավի մեծ են մոնղոլ ժողովրդի հաջողությունները։ Այդ են վկայում երկրի ժողովրդական տնտեսության զարգացման առաջին (1948—1952), երկրորդ (1953—1957) հնգամյակների արդյունքները, այդ է

ցույց տալիս 1958—1960 թ. թ. եռամյա պլանի խնդիրների կատարման ընթացքը։

Մոնղոլական գյուղում հիանալի հաղթանակ է տարել արաթական (գյուղացիական) տնտեսությունները կոոպերացնելու ՄԺՌԿ-ի քաղաքականությունը։ Ներկայումս կոոպերացված է արաթական տնտեսությունների 75 տոկոսը։ Մեծ աշխատանքներ են իրականացվում քոչվոր արաթներին նստակյաց դարձնելու ուղղությամբ։ Ժողովրդական իշխանությունն ակտիվ կերպով օգնում է կոոպերատիվների տնտեսական ու կազմակերպական ամրապնդման գործին, նրանց երկարատև վարկեր է տրամադրում։

Մոնղոլ ժողովուրդը ջերմորեն պաշտպանում է ՄԺՌԿ-ի քաղաքականությունը՝ ստեղծել սոցիալիզմի հաստատուն նյութատեխնիկական բազա և արագացնել սոցիալիստական շինարարությունը։ Կատարելով Մոնղոլիայի Ժողովրդա-ռևոլյուցիոն պարտիայի XIII համագումարի (1958 թ.) դիրեկտիվները ժողովրդական տնտեսության զարգացման եռամյա պլանի իրագործման ուղղությամբ, երկրի աշխատավորները յուրացնում են խոպան հողեր, կառուցում են նոր գործարաններ, ծավալում են բնակարանային շինարարություն, բարձրացնում



են աշխատանքի արտադրողականությունը։

Առաջիկա տարիներին զգալի զարգացում կստանան. ջերմա-էներգետիկ, մետաղամըշակման, թեթև և սննդի արդյունաբերությունը, ինչպես նաև շինանյութերի արտադրությունը։ 1961—1965 թվականներին ժողովրդական տնտեսության զարգացման պլանով ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը, 1957 թվականի համեմատությամբ, կավելանա 2,4 անգամ։ 1958 թվականին արդյունաբերության տեսակարար կշիռը երկրի համախառն արտադրանքի մեջ կազմում էր 41 տոկոս։

Խոպան հողերը յուրացնելու շնորհիվ 1960 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, երկրի ցանքատարածությունները կավելանան 2,2 անգամ, իսկ հացահատիկի համախառն բերքը՝ 3 անգամ։ Այդ հարցում Մոնղոլիային տեխնիկական մեծ օգնություն է ցույց տալիս ՍՍՌՄ-ը։

Տնտեսության զարգացման բազայի վրա անշեղորեն բարձրանում է աշխատավորության կենսամակարդակը։ Երկրորդ հնգամյակի տարիներին բանվորների ու աշխատավորների ռեալ աշխատավարձն աճեց 40 տոկոսով, գյուղական բնակչությանը՝ 60 տոկոսով։ Կատարվում են գների պարբե-



րական իջեցումներ, կարգավորված է աշխատավորների սոցիալական ապահովագրության գործը։ Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայի բնակչության ամենամյա աճն այժմ կազմում է 3 տոկոս։

Մոնղոլիայում կատարվել է իսկական կուլտուրական ռևոլյուցիա։ Հասակավոր բնակչության մեջ վերացված է անգրագիտությունը։ Մոնղոլիայի դպրոցներում և մյուս ուսումնական հաստատություններում սովորում է յուրաքանչյուր վեց բնակչից մեկը։ Անցյալ ուսումնական տարում գործում էր ավելի քան 400 հանրակրթական դպրոց, 15 միջին հատուկ ուսումնական հաստատություն և բարձրագույն հաստատություն, այդ թվում համալսարան։

Ռեսպուբլիկայում տարեցտարի բարելավվում է առողջապահության գործը։ Այստեղ յուրաքանչյուր հազար մարդուն արդեն ընկնում է մեկ բժիշկ, որը շատ բարձր է կապիտալիստական Արևելքի շատ երկրների մակարդակից։ 1958 թվականին, 1947 թվականի համեմատությամբ, բարձրագույն կրթությամբ մասնագետների թիվն աճել էր 7,4 անգամ։ Մեծ թվով մոնղոլ երիտասարդներ բարձրագույն կրթություն են ստա-



նում ՍՍՌՄ-ի և սոցիալիստական լագերի մյուս երկրների բուհերում։

Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկան խաղաղասեր երկիր է և միշտ հանդես է գալիս միջազգային լարվածության թուլացման և ժողովուրդների միջև բարեկամական հարաբերությունների հաստատման օգտին։ Այս ամենը ՄԺՌ-ին անվիճելի իրավունք է տալիս դառնալու ՄԱԿ-ի անդամ։ Սակայն ԱՄՆ-ը և այլ պետություններ դեռ 1946 թվականից սկսած խոչընդոտում են այդ հարցի արդարացի լուծմանը։

Սոցիալիստական երկրները, Ասիայի և Աֆրիկայի հասարակայնությունը հանդես են գալիս Մոնղոլիայի այդ իրավունքի պաշտպանությամբ։

Մոնղոլ ժողովուրդը ընթանում է սոցիալիզմի ուղիով՝ ամենօրյա օժանդակություն ստանալով Սովետական Միությունից, Ժողովրդական Չինաստանից և սոցիալիստական հզոր լագերի բոլոր անկեղծ ու անշահախնդիր բարեկամներից։ Եվ իմպերիալիստական պետությունների ոչ մի թշնամական ակտ, ոչ մի անբարյացակամ վերաբերմունք չեն կարող նրան շեղել սոցիալիզմի ճանապարհից։

---

Խմբագիր՝ Վ. ԲՋՆՈՒՆԻ

ԲԱՑՎԱԾ Է
«ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-Ի
1960 ԹՎԱԿԱՆԻ
ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*Լույս է տեսնում ամսական 2 անգամ։*

*1 ամիսը— 1 ռ. 50 կ.*

*6 ամիսը— 9 ռ.*

*12 ամիսը— 18 ռ.*

*Մեկ համարը 75 կոպեկ*

*ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ*


Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 21 1959 г.

*ՎՖ 08222 Պատվեր 734 Տիրաժ 8550*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան Կնունյանցի № 8։*

*Գինը 50 կոպ.։*